# ԷՋՄԻԱԾԻՆ

ԿՐՕՆԱ—ԲԱՐՈՅԱԿԱՆ ԱՄՍԱԹԵՐԹ

ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ, ԹԻՒ 10 ՖՐԷԶՆՕ, ԿԱԼ. ՀՈԿՏԵՄԲԵՐ 1918 ՏԱՍԸ ՍԷՆԹ


ԱՌԱՋՆՈՐԴՈՂ

## ԸՆՏԱՆԵԿԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆ

Մարդկային ընկերութեան աղբերակը ընտանիք կոչուած հաստատութիւնն է։ Ընտանիքներէ բաղկացած են աշխարհի բոլոր մեծ ու փոքր ցեղերն ու ազգերը։ Չեմ կրնար երեւակայել գործ մ'որ այդ հաստատութիւնը հիմնելէ և անոր ամբողջ պատասխանատուութիւնը ստանձնելէ աւելի դժուարին ըլլայ։ Երկու տարբեր սեռէ անձերու միաւորումով կը հիմնուի այդ հաստատութիւնը, որուն սովորական բացատրութիւնն է Ամուսնութիւն։ Հայաստանեայց Եկեղեցին Աստուածային օրհնութիւնով և սրտաբուղխ աղօթքներով նուիրագործելով ամուսնութիւնը, ի ներկայութեան բազմաթիւ հրաւիրելոց, մէկ հոգի և մէկ մարմին եղած կը հռչակէ ամուսնացեալները. «Եւ եղիցին երկոքեան ի մարմին մի. արդ՝ զոր Աստուած զուգեաց՝ մարդ մի՛ մեկնեսցէ»։ Մեր Եկեղեցին տարիքի և արենակցական բոլոր օրինական պայմաններուն ուշադրութիւն դարձնելէ վերջ, երբ վեհօրէն կ'արտասանէ այդ պատգամը ամուսնացողներու ականջներուն, Սէրը անպայման ու անխարդախ սէրը, կը նկատէ հիմն ու խարիսխը ընտանեկան հաստատութեան։ Այդ սէրը այնքան բարձր, այնքան հզօր, այնքան Աստուածային պէտք է ըլլայ, որ երկուքին ալ սրտերը թափանցիկ պիտի ընէ՝ կարենալ տեսնելու համար ինքզինքնին իրարու մէջ։ Ինչպէս որ պայծառ երկինքի մը տակ, խաղաղ լճակի մը եզերքը, կեցող մը երկինքի և բոլորտիքի գեղեցկութեանց համապատկերը՝ իր պատկերին հետ՝ ցոլացած կը տեսնէ լճակին մէջ, այնպէս ալ կինը մարդուն և մարդը կնոջ ներքին աշխարհին մէջ յստակ կերպով նշմարէ պիտի փոխադարձ սէր, հաւատարմութիւն և անձնուիրութիւն։ Ահա անբեկանելի եռոտանի ահա այն երկնատիպ եղբայրութեան հրաշագործ գաղափարականը, որուն վրայ միայն կարելի է հաստատել ընտանեկան յարկը։ Թող եղծանի գեղեցկութիւնը, թող փճանայ հարստութիւնը, թող խանգարի առողջութիւնը, թող ծերանայ առոյգ երիտասարդութիւնը, այդ հաստատութեան մէջ, երբեք տարբերութիւն չի պիտի ընէ, չ'պիտի ազդէ առն և կնոջ վրայ։ Վասն զի անոնք նոյնացած են, կինը մարդուն՝ մարդը կնոջ միս կէսն է, իրարու մէջ ձուլուած, շաղախուած են անոնք. ոչ-ինչ կրնայ զատել զանոնք իրարմէ, ինչպէս չենք կրնար զատել ջուրը խմորէն, մորթը մարմինէն։

Այն բոլոր մեծ ու բարի անձնաւորութիւնները որոնք ազգ մը վերածնած, ժողովուրդ մը լուսաւորած, ցեղի մը առաջնորդած ու պատմութեան մէջ անմահացած են, այդպիսի ամուսնութեանց ծնունդներ էին անկասկած։ Երջանիկ ընտանիք մը կազմելու, մարդկային ընկերութեան պարկեշտ ու օգտակար զաւակներ պարգեւելու առաջին պայմանը առն և կնոջ միջև սէրն է, սէր մը որ կազմուած չըլլայ հարստութեան, մորթի գեղեցկութեան և հաճոյքի հետ, այլ սրտի հետ։ Այդպիսի սիրով միացող ու կենակցող ամուսնոց զաւակները բնականաբար ազդուելով իրենց ծնողքներէն՝ ինքնին պիտի ժառանգեն անոնց այդ չինիչ և օրհնաբեր յատկութիւնները, որոնցմով կը կազմուի ըն-

տանիք կոչուած գերագանցօրէն երջանիկ հաստատութիւնը։ Ու բնական է որ ցեղի մը մէջ որքան շատ ըլլայ անոնց թիւը, այնքան աւելի բնուր ու բարեբաստիկ կըլլայ նոյն ցեղը։ Կը հետեւցնենք ուրեմն, որքան շատ ըլլան այդպիսի ցեղեր աշխարհիս վրայ, այնքան աւելի խաղաղ ու բարեկարգ վիճակի մը կը բարձրանայ բովանդակ մարդկային ընկերութիւնը, որովհետեւ ան բաղկացած է ընտանիքներէ, անոր աղբերակը ընտանեկան հաստատութիւնն է։ Այս էր Քրիստոսի զոհաբերութեան նպատակը, գէթ այս բարձր ու վսեմ նպատակը կը ձգնի առաջնորդել Հայաստանեայց Եկեղեցին իր զաւակները, որ պսակի արարողութեան մէջ դրած է Աստուածային խորհուրդ եւ անբաժանելիութիւն. բայց դժբաղդաբար դեռ կը չարչարուի ներքին ու արտաքին բռնակալներու հրէշային ճիրաններուն մէջ։

Ամուսնութիւնը իր ճշգրիտ ու վեհագոյն ըմբռնումէն շեղած է այժմ բաւականէն աւելի. սիրոյ, հաւատարմութեան եւ անձնուիրութեան տեղ կը տիրեն հաճոյքի, հարստութեան եւ վայելքի նկատումները։ Ի դէպ է ըսել որ պատերազմը եւ զինուորագրութիւնն ալ բերին անոր վրայ նոր ազդեցութիւն մըն ալ, որ ծանօթ է ամենուս։ Ամուսնութեան թեկնածուներ ի խնդիր են արտաքին գեղեցկութեան եւ մամոնայի։ Սրտի ազնուութիւն, մշակուած միտք, հոգեկան բարձրութիւն եւ բարեպաշտիկ կենցաղ նուազ կարեւորութիւն ունին։

Մեզի ծանօթ Հայ ընտանեկան օճախը, Հայրենիքի մէջ, ի հիմանէ քանդուեցաւ, ուր դեռ կը ծխար ու կը ցոլանար պարկեշտութիւնը եւ առաքինութիւնը հին բարի օրերու։ Ակնարկ մը դարձուցէք շուրջերնիդ այս երկրի Հայ ընտանեկան հաստատութեանց վրայ։ Երկրէն գաղթած առաջին սերունդին հետ մարելու եւ անհետանալու վրայ են Հայուն ընտանեկան համբաւել սրբութեան շողշողուն ճառագայթները։ Ծերերու սրտերէն իր մնաք բարովը ըսած է սէրը։ Ազատ երկրի ազդեցութեան տակ, շատ տուներէ ներս մտած է անհամաձայնութիւնը եւ հանապազօրեայ խռովութեան ու կագ ու կռիւի բոյն դարձուցած ու դիւաբնակ դժոխքի է վերածած, արքայութեան տիպար ըլլալու սահմանեալ, ընտանեկան հաստատութիւնները։ Մեզի ծանօթ են բաւական թըւով այրեր ու կիներ, որոնք արեւելեան նահանգներու մէջ իրենց ամուսինները լքած ու հոս եկած են։ Ասկէց ալ հոն գնացողներ պակաս չեն։ Եկեղեցին ու ազգը ի՞նչ կրնան յուսալ այսպիսեաց զաւակներէն, իբրեւ Հայ, որոնք փողոցային ստահակներ դառնալու դատապարտուած են ըստ ամենայն հաւանականութեան։

Շատեր ալ այսօր կը նշանուին ու վաղը դըրժելով իրենց ուխտը կը զղջան, հրապարակի վրայ թողլով «բռի բառ»ի խոշոր նիւթ մը, եւ թշնամիներ ստեղծելով իրենց շուրջ. թողունք այդ ատթիւրած իրենց կարողութենէն վեր ծախքերն անգամ։

Հապա ի՞նչ ըսենք այն ամենատգեղ երեւոյթներու մասին որոնք հետզհետէ կ'ակսին բազմանալ մեր շուրջ, ամուսնական աշխարհին մէջ։ Մեր ներքին կեանքի ամենախորունկ վէրքերն են անոնք որոնք կարծես երթալով վարակիչ հանգամանք մը կը ստանան։ Ի՞նչ ընենք. պահե՞նք, ծածկե՞նք։ բայց պահուած հիւանդութիւնը չի բուժուիր։ Ամերիկայի մէջ հայ մամուլը շատ բան գրեց ամուսնական խնդրոյն վրայ. բայց քարոզները եւ հրատարակութիւնները կարծես յօդս կը ցնդին։ Մեր այս աշխատութիւնն ալ անոնց քով կ'երթայ անշուշտ։ Այսօր քաղաքական լուր մը, կուսակցական պայքար մը աւելի հետաքրքրութեամբ կը լսուի ու կը կարդացուի, քան մեր ներքին ախտերէն զմեզ զգուշացնող լուրջ խորհրդածութիւն մը։ Մինչդեռ այդ ախտերն ու չարիքները նոյնքան շատ մարդ կ'ըսպաննեն, ընտանեկան հաստատութիւններ կը կործանեն, հետեւաբար ազգ մը կը փըճացնեն, աւելի դիւրութեամբ քան պատերազմը։

Մեր շրջանակին մէջ հազիւ երկու տարուան ամուսնացած 5է աւելի զոյգեր գիտենք մենք, որք արդէն ձեռք առած են դատարանին դուռը եւ տիվօրս կ'աղաղակեն. այն զոյգերը որոնք երբեմն խաչին ու աւետարանին վրայ, Աստուծոյ խորանին առջեւ, մեծ բազմութեան մը ներկայութեան, հանդիսաւորապէս ցմահ սէր, անձնուիրութիւն եւ հաւատարմութիւն ուխտած էին։ Քիչ չէ թիւը անոնց որոնք ասոնցմէ աւելի բախտաւոր չեն։ Ցաւալի, յոյժ ցաւալի է ասիկա։ Ասոնց մէջ կան այնպիսիներ, որք իրենց դժբաղդութեան պատճառ կը համարին զանոնք, որոնք լոկ բարեկամական շարժառիթէ առաջնորդուած, նոյն իսկ ամուսնացեալներուն փափաքովը, լոկ միջնորդ եղած են իրենց ամուսնութեան։ Եւ որ քամնելին է, շահախնդրութեան կը վերագրեն անոնց խըղճահարուելու։ Ո՛վ դարք, ով բարք . . . ։ Սուրբ Հոգիին դէմ եղած հայհոյութեանց տեսակներէն մին է աս ալ, որուն ներում չի կայ։ Որ ոխերիմ թշնամիներ միայն կ'ստեղծէ, զիրար ատողներու թիւը կը ստուարացնէ, եւ ազգին սիրտը կը կրծէ, ու չի թողուր որ զօրանայ, ուռճանայ, գեղեցկանայ եւ ազնուանայ։ Մի՞թէ այսպիսի գայթակղութիւն սերմանողներու համար չէ՞ Քրիստոսի խօսքը. «Որ ոք գայթակղեցուցանէ զմի ի փոքրկանցս

յայտնել յիս հաւատացելոց, լաւ է նմա՝ եթէ կախիցի երկան իշոյ ընդ պարանոց նորա և ընկըղմիցի ի խորս ծովու»: (Մատթ. ԺԸ. 6):

Ծանօթներ ու բարեկամներ, ինչ որ ալ ըսեն, ինչ կերպով ալ պատճառ բերեն, վերջնական ընթացքներ իրենց կը պատկանի, իրենք կ՚արտասանեն վերջին խօսքը, իրենք միայն պատասխանատու են իրենց պատահած բախտին: Ուստի աճապարելու չեն այդ մեծ ԱՅՈն արտասանելէ առաջ: Հեռուէն ու մօտէն լաւ սերտելու են գործը, լաւ ուսումնասիրելու են միմեանց նկարագիրը, կարելի եղած չափով յարաբերութիւն մշակելու են ընտանենալու են իրարու՝ նոյն իսկ ընտանեկան ամբողջ պարագաներով, որոնց ազդեցութիւնը անտես թողելու չէ:

Եւ յետոյ, հարսնութեան այս ինչ չափը, թանկագին զոհաբերելները, փրու փրու հանդերձեղէնները չեն որ կը կազմեն ընտանեկան հաստատութիւնը. ո՛չ: Ամենամեծ սխալները առանց հաշուի առնուած ատեն կը գործուին արդէն և այնքան տխուր հետեւանքներու կ՚առաջնորդեն:

Ահա թէ ինչո՛ւ չեմ կրնար երեւակայել գործ մը որ այդ հաստատութիւնը հիմնելէ և անոր ամբողջ պատասխանատուութիւնը ստանձնելէ աւելի դժուար ըլլայ: Այս դժուարութիւններով եթէ կարելի չըլլայ հիմնովին արմատախիլ ընել չարիքը, գէթ կը նուազի:

Ընտանեկան հաստատութիւնը Աստուածային կազմակերպութիւն մըն է, ու չես կարող ուզածիդ պէս վարուիլ ու խաղալ անոր հետ: Աստուծոյ կամքը, սէր, սէր և դարձեալ սէր հարկ է թագաւորացնել անոր մէջ:

---

# Fourth Liberty Loan

  

## ԼԻՊԸՐԹԻ ՊՕՆՏ ՄԸ ԵՒՍ ԳՆԷ

Հրացանը ուսին, խեղանդամ մնալու, նոյնիսկ մահուան վտանգը աչքին մէջ, պատերազմի դաշտը գնացող զինուորը չէ որ միայն կը կռուի աշխարհը կուլ տալ ուզող գերման Քայզերին դէմ. մենք բոլորնիս ալ պէտք է կռուինք, հոգ չէ թէ տուներնուս մէջ հանգիստ նստած ենք: Փոքրիկ ընտանիք մը ամեն օր ստիպուած է խորհելու թէ ինչ պիտի ուտենք և ինչ պիտի հագնինք: Մըտածելու ենք թէ միլիոնաւոր մեր զինուոր զաւակները այդ խաւամբեր կեանքին մէջ՝ առանց շահու գործ մը ընելու՝ ամեն օր ի՞նչ պիտի ուտեն, ի՞նչ պիտի հագնին և ինչո՞վ պիտի կռուին: Անոնց շահու գործը սակայն անհունապէս մեծ է քան մեր մեծ ու պզտիկ առեւտրական զբաղումները: Անոնք կորստեան անդունդին եզերքը գտնուող աշխարհը պիտի շահին: Ատոր համար անոնց պէտք եղած ամեն բանը մենք պիտի ղրկենք, եթէ չենք ղրկեր, մենք ալ թշնամիին կողմն ենք. քաւ լիցի:

Ահա այս նպատակին համար է Ազատութեան Փոխառութիւնը, որուն մէջ կը միանան՝ նախ մեր սրբազան պարտականութիւնը, յետոյ մեր շահն ու պատիւը:

Եթէ Ամերիկացին մէկ Պօնտ մը գնէ, մենք երկու հատ գնելու ենք, որովհետեւ պատերազմը կրկնակ նշանակութիւն ունի մեզի համար՝ Հայկական և Դաշնակցային, որուն դրօշը կը գտնուի այսօր Ամերիկան: Ի՞նչ մեծ պատիւ ու մեծ փառք է ասիկա մեզի նման փոքրաթիւ ժողովուրդի մը համար:

Լիպըրթի Պօնտ մը եւս գնէ:

---

## ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐՈՒՆ

Երբ «Էջմիածին»ի հրատարակութեան սկըսանք, դրական աշխատութիւնը մեզ վերապահելով, նիւթականի մասին ալ հաւատք ու վստահութիւն ունէինք մեր կրօնասէր ժողովուրդին վրայ, թէ ան սիրայօժար պիտի մասնակցի մեր ծախքերուն, վճարելով իր բաժանորդագին որոշուած փոքրիկ գումարը: Մինչեւ հիմայ դեռ քիչերը պատասխանեցին մեր ակնկալութեան: Բայց թէ մընացեալներն ալ մինչեւ տարեգլուխ պիտի վճարեն տարակոյս չունինք:

Այս մօտ թերթին մէջ բան մը գրել բնաւ մտքէ չէինք անցուցած, բայց լուրջ պատճառ մը եկաւ մեր կամքին ու սկզբունքին հակառակ վիճակի մը մէջ դնել մեզ:

Միացեալ Նահանգաց կառավարութեան մամուլի նոր օրէնքը, թուղթի խնայողութեան պատճառներով, կ՚ազդարարէ մեզ որ թերթ չի ղրկենք այն բաժանորդներուն որ իրենց բաժանորդագինները չեն վճարած:

«Էջմիածին»ի հրատարակութիւնը տարեկան մը ամբողջացնելու համար երկու թիւ միայն մընացած ըլլալով, խորին փափկանկատութեամբ կը խնդրենք մեր բարի ընթերցողներէն, որ փութան իրենց պարտքը վճարել և դժուարութեան չի մատնել մեզ:

# ETCHMIADZIN

A RELIGIOUS MONTHLY PAPER

PUBLISHED BY

REV. V. V. KASPARIAN

P. O. Box 290 Fresno, Cal.

SUBSCRIPTION PRICE $1.00 PER YEAR

Entered at the postoffice at Fresno as second class mail matter

VOL I, NO. 10 OCT. 1918 PRICE 10 CENTS


## ՎԵՀ. ԿԱԹՈՂԻԿՈՍԻՆ ԿՈՆԴԱԿԸ

Ռուսիա գտնուող Հայ Ազգային կալուածներու

Գրաւման մասին

* * *

*(Ժամանակ առաջ Կովկասի մէջ, Գերմանին պաշտօնական նպատակներով հաստատուած, արխ-բահաչակ Թօմխարիատը, Զարական ըէժիմին ընել չի յաջողած նողկալի ձեռնարկը կրկնելով, փորձած էր գրաւել իր սահմաններուն մէջ գտնուած Եկեղեցապատկան և ազգային-կրթական հաստատութեանց բոլոր կալուածները, իրր թէ աշխատաւոր ժողովուրդին հաւասարապէս բաժնելու դրութիւնով: Ազգիս սիրելի և ամբաղդ Հայրապետը, ժամանակին բողոքած էր այս յափշտակութեան փորձին դէմ. բայց յայտնի չէ թէ ինչ արդիւնք ունեցած է: Այս առթիւ Հայրապետական սրբատառ կոնդակ մըն ալ ուղղած է Նորին Վեհափառութիւնը, Եւրոպայի Առաջնորդ Գեր. Տ. Գէորգ Արքեպիսկոպոս Իւթիւճեանի, որ ահաւասիկ.)*

* * *

ԳԷՈՐԳ ԾԱՌԱՅ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ և անհասանելի կամօքն Աստուծոյ Եպիսկոպոսապետ և Կաթողիկոս Ամենայն Հայոց Ծայրագոյն Պատրիարք համազգական նախամեծար Արարատեան Առաքելական Մայր եկեղեցւոյ Սրբոյ Կաթողիկէ Էջմիածնի՝ Գերաշնորհ Առաջնորդի թեմին Հայոց Եւրոպիոյ Տ. Գէորգայ Արքեպիսկոպոսի ողջոյն և օրհնութիւն Հայրապետական խնդալ ի Տէր.

*Առաքելական Սուրբ և ուղղափառ Եկեղեցի Հայաստանեայց անքննելի խորհրդովք վերնային Նախախնամութեան դարուց ի դարս ընդ դժնդակ կրիւք նեղութեան և վշտաց անկեալ և հարուածեալ ի կողմանց կողմանց, այլու իսկ կրթեաց զիւրն, զպաշտօնեայս անձ ս. Եկեղեցւոյս և զհաւատացեալս ի Նա, յառաքինութիւն քրիստոնէական երկայնամտութեան և օրինաւորեալ պաշտպանութեան և անխզելի հաւատարմութեամբ առ Նա:*

*Ցայս սկզբանս անյեղլի հաւատացեալ և Մեք, անհնարին ցաւօք համակեալք, զամք ի ձեռին Կոնդակիս յայս անձել Հայրապետիցդ Մերոց որդւոց զցաւս որ հասին Մեզ ի վերջնում աւուրս: Զի ընթեռնումք յօրագիրս, եթէ անակնկալ իմն անօրինութիւնք Ցանձնակատար Խորհրդոյ Կովկասեան շրջանի, զան հանել ի ձեռաց Հայրապետի Ամենայն Հայոց և ի ձեռաց Հայ եկեղեցական իշխանութեանց և Հոգաբարձութեանց եկեղեցեաց զամենայն կալուածս վանորէից մերոց և եկեղեցեաց, որով և կապտիմք յիրաւանց հասոյթից ազգային ընդհանուր սեպհականութեանց մերոց և ստացութեանց, որք էին յանուն Մեծի Աթոռոյս:*

*Ո՛չ ամենեւին անդէպ համարիմք ի յուշ ածել որդւոցդ Մերոց և հոգևոր զաւակաց, զնուիրական իրաւանց եկեղեցեաց մերոց ընդհանրապէս ի վերայ անկապուտ սեփականութեան և մատակարարութեան կալուածոց և գոյից և հասոյթից զորս ստացեալ ունի Նա ի սկզբանէ անտի ի բարեպաշտ նուիրատուութենէ և յընծայաբերութենէ իւրոց իշխանաւոր և ժողովրդական հաւատացելոց և զորս պահեալ և պաշտպանեալ է յառաջին իսկ դարուց անտի և այսր, ո՛չ միայն ընդ իշխանութեամբ Հայրապետից իւրոց հարազատութեան արքայականի և իշխանականի, այլ և ի ներքոյ հալածանաց և տառապանաց օտարաձեան իշխանութեանց երկրի մերոյ, մատակարարեալ զարդիւնս ըստ օրինաց Եկեղեցւոյս, արդիւնաւորեալ ըստ մտաց նուիրատուաց՝ ի պայծառութիւն հոգևոր և կրթական հաստատութեանց իւրոց: Իրաւունք այդ անկապուտ ձեւակերպեալ հաստատեցաւ ի գոյութիւն և ի պաշտպանութիւն ամենայն իրաւանց և իշխանութեան մատակարարութեան սուրբ Եկեղեցւոյս Մերոյ ի 1836 ամի, ի կարգաւորեալ օրէնադրութիւն, որ վասն Հայաստանեայցս եկեղեցեաց և կառավարութեան նորա և ի նմին իսկ ի յօդուածի 1116րդի (ԺԱ. Հ. Ա. Մ.) բացայայտ բանիւ դրոշմեալ, եթէ «Եկեղեցիք Լուսաւորչա-*

կան Հայոց ունին իրաւունս ունելոյ անշարժ կալից» և ի յօդուածն 1141, Կ. Յ., եթէ Սինհոդոսին է Ս. Էջմիածնի «վերատեսչութիւն կարգաց կառավարութեան գոյից Լուսաւորչական եկեղեցեաց Հայոց»: Արդ իրաւունք սեփականութեան և մատակարարութեան հասից և եկամտից հաստատեալք երբեմն, իրաւունք են առացեալք ի դարուց դարս և նուիրագործեալք յամենայն իշխանութեանց, որք եկին անցին ընդ աշխարհս մեր: Եւ դժուարին լինի մեզ հաւատալ, եթէ յեղակարծ կարգադրութիւն ինչ վեր ի վայր յեղյեղեսցի հիմնական օրէնք և կարգ տիրապետութեան Ս. Եկեղեցւոյս և այն ի ժամանակի, յորում կամքս, ի ժամանակի, երբ ամենայն հաստատութիւն եւ հաստատեալ ազգային ունի կազմակերպել ինքնուրոյն օրինադրութեամբ, ազատական, ինքնիշխան և ի ձեռն ազգային կազմակերպութեանց իւրոց:

Նա՛ զի իրաւունքս այսորիկ այնու եւս առաւել զատնին զօրացեալ և անյեղլի հաստատեալ, զի ո՛չ տեղական ինչ են կալքդ և գոյք, և ո՛չ մասնաւոր ինչ են սեփականութիւն և մատակարարութեան իրաւունք նոցին և պատկանեալ միայն Հայոց, որ սահմանս շրջանին Կովկասու և կամ ի սահմանս համայն Ռուսիոյ, այլ են նուիրական ստացուածք և անկապուտ սեփականութիւնք ամենայն Հայոց, որ ի սփիւռս աշխարհի և համարձակօրէն իսկ մարթ է հաստատել, եթէ առաւելագոյնք են ի նոսա մասնակցութիւնք Հայոց բնակելոց ի Պարսս, ի Հնդիկս, ի գաւառս գաւառաց Տաճկական Հայաստանի և Ամենայն Հայոց, որ ի ծագս աշխարհի: Այլ չկամիմք իսկ յերկարել ի բացատրութիւնս, քանզի օրէնք հիմնականք իսկ գան ի պաշտպանութիւն իրաւանց վանօրէից և եկեղեցեաց Մերոց, քանզի ի յօդուած 1213 բացայայտ բանիւ խոստովանի և ընդունի, եթէ «Ամենայն շարժական և անշարժ ստացուած, սահմանեալ ի պահպանութիւն որ և իցէ Լուսաւորչական Հայ մենաստանի կամ եկեղեցւոյ կամ նոցին իսկ վերաբերեալ Աստուածահաճոյ հաստատութեանց՝ համարի ընդհանուր ստացուած ողջոյն Լուսաւորչական Եկեղեցւոյ Հայոց:»

Եւ չկարէր իսկ այլազգ ինչ լինել, զորչափ Մ. Աթոռս համարի և է կեդրոն բովանդակ Հայ Առաքելական Ս. Եկեղեցւոյ, զորչափ գլուխ Ամենայն Եկեղեցեաց Հայոց և ընդհանուր Քահանայապետութիւն առ բովանդակ Հայ ժողովուրդն կայ կացեալ, առ որ յօդեալ են ամենայն անդամք նորա, իբր միոյ և եթ մարմնոյ և իբր անանջատ մասունք միայնոյ Հայ Եկեղեցւոյ: Ուստի և հարկ էր զգաստանալ ի նկատի առնել խորամիտ լինել, եթէ չէր հնար լոկ տեղական կերպարանաւ վարել ընդ կալս և ընդ գոյս, ընդ կալուածս Հայ Եկեղեցւոյ և ընդ հաստատութիւնս նորա և կարգաւորել սեփականութիւն նորա զմատակարարութիւն նոցա ազիկամի:

(Շարունակելի)

---

## ՄԻՏՔԻ ՓՈԽԱՌՈՒԹԻՒՆՆԵՐ

Առաքինութիւն մի՛ փնտռեր այն տանը մէջ, ուր թշուառ մը չի յաճախեր և բարեգործութեան համար անկիւն մը չի կայ:

Եթէ կուզես տանդ մէջ երջանկութիւն պահպանել, անոր առաստաղը կանգնեցուր սիրոյ, բարեպաշտութեան, աշխատասիրութեան և գոհունակութեան սիւներուն վրայ:

Նոր կազմուած ընտանեկան հաստատութեան մը մէջ ամենէն թանկագին կարասին Սէրն է, զոր պէտք է գործածել մեծ զգուշութեամբ և իմաստութեամբ:

Եթէ զաւակը աստիճանաւոր պարոն մըն ես, տունիդ մէջ ծառայ ըլլալու մի ամչնար:

Էրիկ կնոջ միջև խռովութիւնը խաղաղեցնելու առեն, մեծ ուշադրութիւն ըրէ․ կրնայ ըլլալ որ անոնք յանկարծ հաշտուին ու դուն մէջ տեղը դէշ հոգի մնաս:

Շռայլ կնոջ մը գեղեցկութիւնը որոգայթ, հարստութիւնը հով, ու լեզուն կրակ է, իսկ ինքը խոշոր փորձանք մը:

Առաքինի և խելացի մարդուն ժպիտը տանը արեւն է. շատ մը վտանգաւոր ամպեր կ՚անհետացնէ:

Ծաղիկ մը գեղեցկութենէն աւելի իր քաղցր բուրումովն յարգի է, այնպէս ալ, կինը ոչ թէ իր գեղեցկութեամբ, այլ իր ազնիւ բնաւորութեամբ միայն կրնայ ըլլալ առաքինի և յարգելի բոլորին:

---

## ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԳՐՔԵՐ ԿՈՒԶԵՆՔ

* * *

Շարական, Մաշթոց ով որ ունի, խմբագրութեանս թող բերէ, կամ լուր տայ «Էջմիածին»ի հասցէով: Գինը կը վճարենք ու կ՚առնենք:

## ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԵՒ ԿՐԹԱԿԱՆ ՇՐՋԱՆ

Անցեալ ամառուան նեղացուցիչ տաքերը, որուն համար հոս հոն արձակուրդի գնացողները արդէն վերադարձած են։ Օդերը սկսած են զովանալ ու հաճելի դառնալ։ Շատեր, որք գնացած էին շրջակայ գիւղաքաղաքները գործելու, արդէն եկած են իրենց տուները։

Այգեկութքը թէպէտ դեռ կըզբաղեցնէ աշխատաւոր այգեպանը, բայց [illegible] գործունէութեան շրջանը կը մեղմանայ տակաւ։ Միայն անձրեւի վախը երբեմն կը շուարեցնէ զանոնք և աւելորդ ծախքերու ալ կ'ենթարկէ։ Կը մաղթենք, որ ամէն վտանգէ ու վնասէ զերծ, վերցնեն չամիչները, որով կարենան հասնել իրենց և աշխարհի ալ պէտքերուն, որոնք այնքան շատ ու տագնապական են այժմ։

Եկեղեցական և կրթական գործերն ալ ունին իրենց գործունէութեան սովորեալ շրջանը։ Ամերիկեան դպրոցները արդէն բացուած են։ Հայ դպրոցն ալ բացուած է ամսոյս սկիզբէն։ Յատկապէս կը յանձնարարենք բոլոր Հայ ժողովուրդին անխտիր, որպէս զի նախանձախնդիր ըլլան իրենց զաւակներն հոն դրկելու, սորվեցնելու համար անոնց մեր պատուական լեզուն, Աստուածախօս բարբառը։

Նոյնպէս Կիրակի առաւօտները Հայ ծնողք չի թերանան Կիրակնօրեայ դպրոց դրկելու իրենց զաւակները, իրենց սրբազան պարտականութեան մէջ։

Յիշենք նաև որ Հինգշաբթի երեկոները կը շարունակուի եկեղեցական և ազգային երգեցողութեանց ուսուցման դասընթացքը, Ս. Երրորդութիւն Եկեղեցւոյ մէջ, որուն պէտք է հետեւի ամէն հայ պատանի և օրիորդ։

Իսկ Եկեղեցի յաճախելու մասին հարկ կա՞յ արդեօք ստիպել, ազդել և յորդորներ կարդալ, որ ամէն Հայու ընական և նուիրական պարտականութիւնն է, գալ ներկայ ըլլալ հոն Կիրակի առաւօտները միայն երկու ժամ, կազդուրուելու համար հոգեւորապէս, աղօթքով խօսելու Աստուծոյ հետ, մաքրուելու համար մեղքերէ և յանցանքներէ, պատմելու Անոր ցաւն ու տառապանքը Հայուն և հայցելու խաղաղութիւն աշխարհիս։

Քիչ չեն անոնք որ արեւելքէն հոս գաղթեցին այս տարի՝ պէտք է տանք փնտռեն եկեղեցին՝ Հայութեան գոյութիւնը աշխարհիս ջնջելէն պահպանող այս հինաւուրց տաճարը նոյնպէս։ Պէտք է յաճախեն հոն բոլորն ալ, իրենց ընտանեկան ամբողջ պարագաներով։ Պէտք է անդամագրուին, բայց անոնցմէ զատ քանի մը տոլարէն աւելի կարեւոր է Եկեղեցւոյ մէջ ներկայութիւննին, զի շատեր դրամ կը վճարեն և եկեղեցւոյ անդամ անունը կը կրեն բայց չեն յաճախեր հոն։ Տրխուր է ասիկա։

Եկեղեցասէր Տիկնանց ընկերութեան անդամներուն վրայ այս մասին ոչ նուազ ծանր պարտականութիւն կիյնայ։ Անոնց իւրաքանչիւր անդամը պարտաւոր է, ամէն Կիրակի առաւօտ, հաւաքել իրենները և դիմել Եկեղեցի։ Այսպէսով միայն կրնան արդարացնել իրենց ստանձնած Եկեղեցասէր անունը։

Հեռաւորութիւնը նշանակութիւն չունի այժմ, երբ, փառք Աստուծոյ, օթոմոպիլները թէ գործի և թէ զբօսանքի համար քաղաքին մէջ և հեռաւոր ճամբաներուն վրայ զիրար կը խաչաձեւեն։

Հայ դպրոց, Կիրակնօրեայ դպրոց և Եկեղեցի, ահա այն երեք հրաշալի ազդակները որոնք զմեզ Հայ կը պահեն այս հեռաւոր օտարութեան մէջ։

Սիրեցէք միշտ զանոնք և անձանձրոյթ յաճախեցէք հոն։

## ՑԵՂԱՅԻՆ ՀԱՅ ԽՈՐՀՐԴԱԿԱՆ

* * *

Պատ. Մանավեան Միացեալ Նահանգաց Կառավարութեան Ներքին Գործոց Կրթական Պաշտօնատունէն որոշուած է Ցեղային Խորհրդական, ինչպէս որ կը տեղեկանանք թերթիս ղրկուած յատուկ նամակէ մը։ Նա պաշտօն պիտի ունենայ այցելել ուր որ Հայ կայ և ծանօթացնել անոնց Ամերիկեան ոգին և մշակել մեր ցեղին մէջ անոր ազնուացուցիչ բարքերն ու սովորութիւնները և նշանաւոր հաստատութիւնները։

Մեր գաղութներուն պարտականութիւնն է գրկաբաց ընդունիլ նորին այցելութիւնը և ըստ ամենայնի գործակից ըլլալ իրեն, դիւրացնելու համար իր փափուկ պաշտօնը և պատուաւոր ներկայացնելու համար մեր ցեղը այս մեծ կառավարութեան քով։



## ՁԻՆՈՒՈՐԻՆ ՔԱՐԴԸ

*Արմենակ Ճղնաւորեան, Եկեղեցւոյս գպրաց դասու սիրուած անդամներէն, որ զինուոր գնացած է, երբեմն կը գրէ մեզի: Այս անգամ Սուվըրնիր տը Լօրէն վերտառութեամբ և ձեռագործ գեղեցիկ խաչանիշով քարդ մը գրկած է մեզի, որուն վրայ հետեւեալ տողերը գրած է.*

*«Գերապատիւ Հայր,*

*Վերջապէս Ֆրանսա հասանք, և բաղդը կ'ունենամ դարձեալ ձեզ գրելու. կուզեմ որ դուք ալ միշտ ինծ գրէք:*

*Եկեղեցւոյ գպրաց դասու մասին տեղեկութիւններ տուէք ինծ, որով շատ կը հետաքրքրուիմ: Իմ պարագաներս չեն ներեր միշտ գրել, բայց դուք գրեցէք*

*Մնամ կարօտիւ Ձերդ*

Ա. ՃՂՆԱՒՈՐԵԱՆ

---

## ՆԱՄԱԿ ՖԻԼԱՏԵԼՖԻԱՅԷՆ

5 Սեպտեմբեր 1918

*Գերապատիւ Տէր Վարդան Ծ. Վարդ. Գասպարեան, բարեջան խմբագիր «Էջմիածին» Կրօնա-Բարոյական ամսաթերթի,*

*Շնորհափայլ եղբայր ի Քրիստոս,*

*Անհուն սիրով այսօր երեք օրինակ ստացայ ձեր հրատարակած «Էջմիածին»էն: Ձեր թերթը շատ սիրեցի արդարև. բայց կը ցաւիմ անոր փոքրածաւալ ըլլալուն. սիրտ փափաքէի զայն մեծցած, ճոխացած, միով բանիւ կատարեալ կրօնական շաբաթաթերթի մը վերածուած տեսնել, որուն կարի յոյժ պէտք ունի Ամերիկահայ գաղութը ընդհանրապէս, և ի մասնաւորի մեր նոր սերունդը: Ձեր թերթիկը քաջալերութեան արժանի է, մեղուաջան Վարդապետ. բնաւ մի' յուսահատիք. շարժեցէք ձեր ոսկեղինիկ գրիչը, քարոզեցէ'ք ի լուր աշխարհի մեծ Վարդապետին փրկաբար խօսքերն ու անոր չինիչ կեանքը: Եթէ աշխարհք չի գնահատեն ձեր ջանքերն, Երկնային Ուսուցիչն յիրաւուն կը վարձատրէ ձեզ լուսեղէն պսակովն յերկինս. Նա' որ իր անսուտ բերանիւ բաւէ. «Վարձք ձեր բազում են յերկինս» իր նորընծայ աշակերտաց:*

*Ուստի այդ ուժեղ հաւատքով զօրացած, յոյսով զօտեպնդուած, Քրիստոսի սիրով վառուած, շարունակեցէք ձեր գործը, որպէս զի կարողանաք բազմաչարչար-նահատակ Հայ Ազգի սոյն փոքրիկ հօտը, բոտ արժանւոյն, հովուել և վաղուան Ազատ-Հայաստանին յանձնել' զարգացած, Աստուածաճանաչ և ճշմարիտ քաղաքացիներ' բառին իսկական նշանակութեամբ:*

*Ողջունիւ սիրոյ և եղբայրական յարգանքներով*

*Մնամ աղօթակից ձեր սրբութեան*

ՊԵՏՐՈՍ ՔՀՆ. ՎԱՐԴԱՆԵԱՆ

---

## ԼՕՍ ԱՆՃԷԼԸՍԻ ԼՈՒՐԵՐ

*Քաղաքիս ազգայիններէն բաւական թուով մարդիկ փոխադրուած են շամիչին քաղաքը' Ֆրէզնօ. ոմանք օդափոխութեան, ոմանք այգի գնելով իրենց բաղդը փորձելու նպատակաւ: Անոնք կը կարծուի թէ կրկին պիտի դառնան հետզհետէ Հրեշտակաց Քաղաքը: Ասոնց մէջ կը յիշուին հետեւեալները. Ս. Տամպուրաճեան, Գէորգ Թաշճեան, Եղիշեանց, Ա. Մկրտիչեան, Հոգաբարձութեան անդամներէն Յ. Ոսգանեան և Ղ. Խանարեան:*

*Գաղութիս հոգեւոր հովիւը' Տ. Աւամ քահանայ Մելիքեան, Ուրբաթ օրեր ժամը չորսին դասախօսութիւնը վերակած է' գպրոցականներուն Եկեղեցական երգեցողութեան և Հայ լեզուի ուսուցման համար: Այս գործի յաջողութեան համար միջավայրի դժուարութիւնը ակներև է, բայց կամքի և սիրոյ ոյժին առջև ամեն թումբեր կը հարթուին:*

*Ն. Ճուլիկեանի մէկ սրունքը օթոմոպիլի արկածով կտրած էր, բայց հետզհետէ ապաքինելու վրայ է: Ճիւլիկեան գերձակի արհեստանոց մը ունի, ուր քանի չափ Հայ և օտար գործաւորներ կ'աշխատին:*

---

### ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԼՈՒՐԵՐ

Ամուսնացեալք

*Խաչիկ Աւաքեան*

*Մարիամ Վարդանեան*

Մկրտութիւն

*Գ. Մատղաչեանի երախան' Սեդրաք*

*Ա. Պէրպէրեանի երախան' Մարիամ*

*Ա. Սարգիսեանի երախան' Աստղիկ*

Մահագրութիւն

*Ա. Զաթոյեան*

*Եղիսաբեթ Ժամկոչեան*

Հիւանդներ (Պըրնէք Սէնիթէրիըմ)

*Զարմայր Ծէհրեան*

*Բաւական լաւցած է և սկսած է քալել անթացուպերու օգնութեամբ:*



## —Տ Օ Ն Ա Ց Ո Ց Ց—

* * *

ՀՈԿՏԵՄԲԵՐ

5. ԿԻՐ. ԲՋ. Բրդ զկնի խաչի։ Բարեկենդան Վարագայ խաչին։

12. Շբ. ԱՋ. Տօն Սրբոյ Գէորգայ Զօրավարին և Ադոկտոսի և Ռոմանոսի երգեցողին։

13. ԿԻՐ. ԱԿ. Գրդ զկնի խաչին։ Տօն Վարագայ Ս. խաչին։

17. Եշ. ԳԿ. Տօն Սրբոց իշխանացն Սահակայ և Համազասպայ։

19. Շբ. ԴԿ. Տօն Սրբոց Եօթանասունն և երկու Աշակերտացն Քրիստոսի։

20. ԿԻՐ. ԱՋ. Դրդ զկնի խաչին։

26. Շբ. ԴՋ. Տօն Սրբոց Թարգմանչացն մերոց Մեսրոպայ, Եղիշէի, Մովսիսի Քերթողին, Գրիգորի Նարեկացւոյն և Ներսիսի Կլայեցւոյն։

27. ԿԻՐ. ԴԿ. Երդ զկնի խաչին։

---

**STATEMENT OF THE OWNERSHIP, MANAGEMENT, CIRCULATION, ETC., REQUIRED BY THE ACT OF CONGRESS OF AUGUST 24, 1912,**

Of Etchmiadzin, published monthly at Fresno, California, for October 1, 1918.

State of California, County of Fresno—ss.

Before me, a Notary Public in and for the State and County aforesaid, personally appeared V. V. Kasparian, who, having been duly sworn according to law, deposes and says that he is the owner of the Etchmiadzin and that the following is, to the best of his knowledge and belief, a true statement of the ownership, management, etc., of the aforesaid publication for the date shown in the above caption, required by the Act of August 24, 1912, embodied in section 443, Postal Laws and Regulations, to-wit:

1. That the names and addresses of the publisher, editor, managing editor and business managers are: Publisher, V. V. Kasparian, P. O. Box 290, Fresno, Cal.; Editor, V. V. Kasparian, P. O. Box 290, Fresno, Cal.; Managing Editor, V. V. Kasparian, P. O. Box 290, Fresno, Cal.; Business Manager, V. V. Kasparian, P. O. Box 290, Fresno, Cal.
2. That the owner is V. V. Kasparian, P. O. Box 290, Fresno, Cal.
3. That the known bondholders, mortgagees and other security holders owning or holding 1 per cent or more of total amount of bonds, mortgages or other securities are: None.

(SEAL) V. V. KASPARIAN.

Sworn to and subscribed before me this 28th day of September, 1918.

ASTAR ELMIASSIAN.

(My commission expires July 20, 1921.)

## ՔԱԼԻՖՈՐՆԻԱ ՆՈՐ ԵԿՈՂՆԵՐՈՒՆ

---

*Արեւելեան նահանգներէն մեծ թուով Հայեր սկսած են Քալիֆօրնիա գալ ու հաստատուիլ այս շրջանակին մէջ՝ լաւ ըլլալով այգեգործութեան մէջ առաջ եկած յաջողութեան մասին։ Մենք չենք գիտեր թէ որչափ չիտակ է այսպիսիներու ընթացքը, բայց կը փափաքինք գիտնալ անոնց հաստատուած տեղերը ու ծանօթանալ անոնց հետ։*

---

## ԼՈՒՐ ՏՈՒՐ ԵԿԵՂԵՑՒՈՑ ՀՈՎՈՒԻՆ

*Երբ տունիդ կամ ծանօթներուդ մէջ հիւանդ կայ։*

*Երբ գիտես թէ բանտարկեալ մը կայ։*

*Երբ գիտես թէ խռովեալներ կան։*

*Երբ գիտես թէ նորեկ կայ։*

*Տեղափոխութեան պարագային՝ նոր հասցէդ։*

Բնակարանի հասցէ՝ 2143 Վէնթուրա ավնիւ,—

--Թէլէփօն 4138- W—

---

## ԷՋՄԻԱԾԻՆ

Կրօնա-Բարոյական Ամսաթերթ

Հրատարակութիւն՝

ՎԱՐԴԱՆ Ծ. ՎԱՐԴԱՊԵՏ ԳԱՍՊԱՐԵԱՆԻ

Բաժանորդագին՝ տարեկան մէկ տոլար

*Նամակ, ծրար են. ղրկուելու են վարի հասցէով։ Բաժանորդագինը կանխիկ է։*

ՎԱՐԴԱՆ Ծ. Վ. ԳԱՍՊԱՐԵԱՆ,

Փօսթ Օֆիս Պօքս 290, Ֆրէզնօ։

---

## Տ Ա Ւ Ր Ո Ս

ԱԶԱՏ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

Բաժանորդութեան Պայմաններ

| | |
|---|---|
| Տարեկան | Երեք տոլար |
| Վեցամսեայ | Մէկ ու կէս տոլար |

*Բաժանորդագրութիւնք կընկերն իւրաքանչիւր ամսոյ սկիզբէն. ամսոյն վերջը բաժանորդագրուողները կ'ըստանան նոյն ամսուան ամբողջ թիւերը։*

*Հասցէն՝* Տաւրոս Փըպլիշինկ Քմբնի,

Օլտ Սաւթի Պիլտինկ, Պոսթըն

Սենեակ 627